## ԱՐՄՆՅՈՒԶ ԼՈՒՐԵՐ

Լուրերն «ԱրմՆյուզ»-ի հիմնական արտադրանքն են և հեռարձակվում են ամեն երկու ժամը մեկ: Ժամը 19:00-ին հեռարձակվում է լուրերի հիմնական թողարկումը, որտեղ տեղ են գտնում կարևոր իրադարձությունները: 00:00-ին հեռարձակվում է ամփոփիչ թողարկումը, որտեղ սովորաբար հայտնվում են այն ռեպորտաժները, որոնք ավարտվել են ուշ ժամի և դուրս են մնացել այլ հեռուստաալիքների լրատվությունից: Լուրերում հեռարձակվում են «ԱրմՆյուզ»-ի լրագրողների պատրաստած ռեպորտաժները, մեր մարզային թղթակիցների ուղարկած սյուժեները, կայքերի տարածած տեղեկությունները՝ հղումներով, «Յութուբ»-ում տեղադրված տեսանյութերը՝ հղումներով: Մեր լրահոսում հայտնված այն ինֆորմացիան, որն օրվա ընթացքում զարգացում է ապրում, ամեն թողարկման ժամանակ նույնպես փոփոխվում է՝ լրամշակվելով ու ներառելով նորահայտ փաստերը: «ԱրմՆյուզ»-ի համար շատ կարևոր է լրատվության արևմտյան ստանդարտները կիրառելը և պահպանելը: «ԱրմՆյուզ»-ի լրատվությունը բաց հարթակ է ընդդիմադիր և իշխանական ուժերի քաղաքական կոռեկտ բանավեճի համար:

10:00, 12:00, 14:00, 16:00, 17:00, 18:00, 19:00, 20:00, 21:00, 22:00, 23:00, 24:00

3 000 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ԲԻԶՆԵՍ ԼՈՒՐԵՐ

Հայաստանյան հեռուստաեթերի առաջին մասնագիտացված տնտեսական հեռուստանախագիծն է: Այն եթերում է 2011 թվականի սեպտեմբերից: «Բիզնես լուր»-ի լրագրողները, ձեռքները զարկերակին, ամեն օր հաղորդում են Հայաստանի տնտեսության զարգացման ու բիզնես միջավայրի ամենաhրատապ նորություններն ու խնդիրները: Մենք հետևում ենք Հայաստանի համար ռազմավարական նշանակություն ունեցող արդյունաբերական ընկերությունների գործունեությանը, անդրադառնում ենք գյուղատնտեսության, շինարարության և զբոսաշրջության ոլորտների խնդիրներին:Բանկային ամենաhինովացիոն վարկերից ու ավանդատեսակներից, ներդրումային ընկերություններից մինչև ապահովագրության ու ԱՊՊԱ-ի նոր լուծումներից է պատմում «Բիզնես լուր»-ը: Տնտեսվարողներին հուզող ոչ մի նոր օրենք ու բարեփոխում չի վրիպում մեր տեսախցիկից: Այդ ամենի մասին ու այդ ամենի հետ մեկտեղ մենք ներկայացնում ենք նաև առաջատար տնտեսագետների, փորձագետների և գործարարների վերլուծություններն ու կանխատեսումները: «ԱրմՆյուզ»-ի բիզնես լուրերին հաջողվեց առաջին անգամ հայկական հեռուստատեսության մեջ համատեղել տնտեսական տեղեկության մատուցման երկու սկզբունք՝ լրատվական և վերլուծական:

11:30, 15:30
22:30

850 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

## ՍՊՈՐՏ

«ԱրմՆյուզ»-ի մարզական լուրերի թողարկումների ժամանակ կարելի է ծանոթանալ մարզական վերջին իրադարձություններին: Դրանք եթերում են 2011 թվականի սեպտեմբերից: Մարզական լուրերի խմբագրությունում ակտիվորեն հետևում են թե՛ հայկական և թե՛ միջազգային մարզական լրահոսին: Հայկական ֆուտբոլից մինչև ամերիկյան ռեգբի ու բասկետբոլ: «ԱրմՆյուզ սպորտ»-ի աչքից չի վրիպում ոչ մի կարևոր մարզական իրադարձություն:

14:45,16:45
23:00

650 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ԻՆՏԵՐԱԿՏԻՎ




«Ինտերակտիվ»-ը հաղորդում է տեղեկատվական տեխնոլոգիաների, համացանցի և հայկական կայքերի խնդիրների, ինչպես նաև հեռանկարների մասին: «Ինտերակտիվ»-ը «Բանաձև» ընկերության հաղորդաշարերից է: Եթերում է 2010 թվականի փետրվար ամսից: Հեռուստանախագիծը վարում է «Բանաձև»-ի լրագրող Մանու Իրիցյանը: 20 րոպե տևողությամբ հաղորդումը «Բանաձև»-ին հատուկ և ծեռագիր դարձած ակտիվ ու դինամիկ ոճով ներկայացնում է ոլորտի պրոբլեմատիկ ու կարևոր թեմաներով ռեպորտաժներ, փորձում գտնել լուծումներ բազմակողմանի ու հավասարակշիռ տեսակետների միջոցով: Այն ներկայացնում է հայաստանյան ու համաշխարհային ՏՏ ամենավերջին իրադարձությունները:

20:30
17:00, 18:15

450 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ԲՈՒԺԱԿ




«Բուժակ» հաղորդաշարը «ԱրմՆյուզ» հեռուստաընկերության թեմատիկ հաղորդաշարերից է: Այն ներկայացնում է առողջապահության ոլորտի նորություններն ու կարևորագույն իրադարձությունները, բացահայտումներն ու հիվանդությունների դեմ պայքարի հնագույն մեթոդները: Հիմնականում ֆիզիկական ու հոգեկան առողջությանը վերաբերող լուրերից բաղկացած այս հաղորդաշարի մեծ պահանջարկը պայմանավորված է այն հանգամանքով, որ այստեղ արծարծվում են համընդհանուր խնդիրներ: «Բուժակ»-ի յուրաքանչյուր թողարկում հագեցած է որակյալ և գրագետ ընտրված մասնագետների անմիջական խորհրդատվությամբ, ինչպես նաև գիտնականների սենսացիոն բացահայտումներով ու առողջապահական ոլորտում տեղի ունեցող նորություններով:

18:45
09:30, 13:30

700 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

armnews 24

PAN ARMENIAN MEDIA GROUP

# ԱՐՏ ՆՅՈՒԶ




Ուշադրության կենտրոնում պահելով այն բոլոր իրադարձությունները, որ կատարվում են Հայաստանում ու Հայաստանից դուրս՝ «ԱրմՆյուզ»-ը որոշեց ստեղծել առանձին լրատվական հաղորդում, որը կլուսաբանի բացառապես մշակութային լուրերն ու շոու բիզնեսի իրադարձությունները: Հաղորդումը եթերում է 2011 թվականի սեպտեմբերից: «Արտնյուզ»-ը աշխատում է ամենօրյա ռեժիմով, հետևաբար ամենաթարմ ու հրատապ իրադարձությունների մասին, որ կատարվում են մշակութային կյանքում, այս հաղորդումն առաջինն է պատմում: Օրվա լրահոսից բացի՝ ուսումնասիրվում են մշակութային ոլորտին վերաբերող ամենակարևոր հարցերը, հաղորդումը բարձրաձայնում է դրանք ու փորձում գտնել պատասխաններ:

21:30
18:15, 01:00

450 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)




## ԱՐՄՔՈՄԵԴԻ + ԱՐՄՔՈՄԵԴԻ ՀՅՈՒՐԱՆՈՑ

«Արմքոմեդի»-ն քաղաքաերգիծական հաղորդում է, որը ներկայացնում է լուրերը հեգնանքի լեզվով: «Արմքոմեդի»-ն ստեղծվել է նախ որպես քաղաքական երգիծանքի լրագրողական կայք 2009-ին (armcomedy.com), իսկ այժմ հանդես է գալիս «ԱրմՆյուզ» հեռուստաընկերության եթերում շաբաթական երկու անգամ՝ ներկայացնելով առավել հնչեղ քաղաքական, սոցիալական, տնտեսական և այլ նորությունները:
«Արմքոմեդի»-ի ստացած հետադարձ կապի և սոցիալական ցանցերի փոքրիկ վերլուծությունը ցույց է տվել, որ «Արմքոմեդի»-ն շատ երիտասարդների համար Հայաստանի մասին լուրեր ստանալու հիմնական աղբյուրն է:
Հաղորդման կառուցվածքը բաղկացած է լրատվական կայքերից և հեռուստաալիքների լուրերի թողարկումներից քաղված լրահոսից, որի մեջ հաղորդումը առանձնացնում է հեգնանք առաջացնող տեղեկություններ և համապատասխանաբար մեկնաբանում դրանք:
Հաղորդումը միմյանց փոխարինելով վարում են հեղինակներ Սերգեյ Սարգսյանը և Նարեկ Մարգարյանը:

23:30
13:00,17:30

1 000 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ՄՏԱՑՐԻՎ




«Մտացրիվ»-ն արտասովոր լուրերի դայջեստ է: Հաղորդումը եթերում է շաբաթը հինգ օր և օրական երկու անգամ է հեռարձակվում: «Մտացրիվ»-ը «ԱրմՆյուզ»-ի եթերում է արդեն 8 ամիս և այս ընթացքում արդեն ունի մշտական և սիրված էջեր: «Մտացրիվ»-ը հավաքում է Հայաստանի ու աշխարհի ամենաարտասովոր իրադարձությունները, ներկայացնում բացառիկ մարդկանց՝ իրենց տարօրինակ սովորություններով: Հաղորդաշարը տպագիր մամուլի հեռուստատեսային տարբերակն է: Դեռ 2 տարի առաջ «Մտացրիվ» էջը տպագրվում էր «newmag» ամսագրում: Այստեղ միայն հայրենի քաղաքական և հասարակական գործիչների մտքի գոհարներն են տպագրվում, հեռուստատեսայինն ավելի շատ էջեր ունի, ու արտասովոր լուրերի դայջեստն ավելի ընդգրկուն է ներկայացված:

20:45
08:45, 15:15

500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

ԲԱՆԱՁԵՎ

ԱՐՏԱԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԻ ՀԵՏ

## «ԲԱՆԱՁԵՎ» ԹՈՔ ՇՈՈՒ

Արտակ Ալեքսանյանի հեղինակային հաղորդումը հայկական հեռուստադաշտի հարցազրույցի ժանրի լավագույն նախագծերից է, որը աչքի է ընկնում լրագրողական որակյալ աշխատանքով, դինամիկայով և բարձրացված հարցերի խորությամբ և լրջությամբ: Հաղորդման նպատակը ամենատարբեր ոլորտների՝ մշակույթից մինչև քաղաքականություն, հարցերի քննարկումն է ու հնարավորինս սպառիչ պատասխանները հանրությանը ներկայացնելը:
2012 թվականի խորհրդարանական ընտրությունների քարոզարշավի ընթացքում «Բանաձև»-ը հայկական հեռուստադաշտի միակ նախագիծն էր, որն անվերապահորեն հարթակ տրամադրեց բոլոր քաղաքական ուժերին, ուղիղ եթերներ ապահովեց արմատական ընդդիմության ներկայացուցիչներին: Միաժամանակ «Բանաձև»-ը փորձ արեց հեռուստաբանավեճի կուլտուրան զարգացնել:

20:00
10:45,16:45

1 250 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ՊՈՍՏ ՖԱԿՏՈՒՄ

«Պոստ ֆակտում» հաղորդումը եթեր է հեռարձակվում ամեն շաբաթ՝ հանգստյան օրերին: Այն պատմում է 20-րդ դարի աշխարհի ամենահայտնի իրադարձությունների մասին: Ամեն մի թողարկումը 20-րդ դարի մի թվականի որևէ իրադարձության մասին է: Հաղորդումը դոկումենտալ ֆիլմի ժանրով է, որտեղ իրադարձությունները վերարտադրելու համար օգտագործվում են բեմականացումներ, բայց հիմնական տեսաշարը փաստավավերագրություն է: Իրադարձությունները պատմում, մեկնաբանում են արտասահմանցի և հայ փորձագետներն ու ականատեսները: Հաղորդման կառուցվածքը եթերում նորարարություն է. վերլուծական հոդվածներին հատուկ լիդով է սկսվում, որին հաջորդում է հաղորդման գլխագիրը և հետո նոր՝ հաղորդավարական տեքստը: Կառուցվածքային առումով հաղորդումը նման է դասական ամերիկյան սերիալների՝ գումարած վերլուծական հոդվածի տարրեր:

22:00
12:00,01:10,17:30

400 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)




# ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐ

«Մանրամասներ»-ը հաղորդում է թեմայի, իրադարձության և լուրերի մանրամասների մասին: Բոլոր մանրուքները, որոնք սուղ ժամանակի պատճառով շրջանցում են «ԱրմՆյուզ»-ի լրատվական թողարկումները, ամենայն մանրամասնությամբ քննարկվում են «Մանրամասներ»-ում: Մեր հաղորդումը մանրադիտակով է դիտարկում խնդիրները: Օրենսդրական նախաձեռնությունների, կանոնների ու կարգերի փոփոխությունների ամեն տառն ու բառը հեռուստադիտողի համար «Մանրամասներ»-ի տաղավարից բացատրում են դրանց հեղինակները, անկախ գնահատական են տալիս փորձագետները: Ասում են՝ սատանան թաքնված է մանրամասներում, բայց և ֆիզիկոսների մասնատած ատոմի ամենամանր մասնիկը կոչվում է Աստծո մասնիկ: Ընթացիկ լուրերի անտեսված մանրամասները՝ «Մանրամասներ»-ի տաղավարում:

19:30
15:00, 18:15

450 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)




## ՍԵՓԱԿԱՆ ՓՈՐՁՈՎ

Հաղորդման ընթացքում հեղինակը սեփական փորձով հաղթահարելու է դժվարություններ և փորձելու է յուրացնել նոր մասնագիտություններ կամ հմտություններ: Վայրի բնության մեջ ապրելուց մինչև դատաբժշկական դիահերձում, պարաշյուտով թռիչքից մինչև հեռուստաաշտարակ ներկել: Նոր, էքստրեմալ ու անակնկալ նախագիծ «Արմնյուզ»-ի եթերում սեպտեմբերի 9-ից Տիգրան Զարեյանի հետ:

21:00
00:40,13:00,23:30

400 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ՉԵՄՊԻՈՆ

«Արմնյուզ» հեռուստաընկերության եթերում տեղական և արտասահմանյան սպորտային անցուդարձին ծանոթացնում է «Չեմպիոն» հաղորդաշարը:

19:30
12:30, 13:00

450 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)




## ԻՄ ԳՐԱԴԱՐԱՆԸ

«Իմ գրադարանը» հեռուստահաղորդումը, որն իրականացվում է ՀՀ Մշակույթի նախարարության հովանավորությամբ, այցելում է հայտնի և ճանաչված մարդկանց և հեռուստադիտողներին ծանոթացնում նրանց գրադարաններին:

18:00
13:30, 01:40

450 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)




## ՓԱՍՏՈՐԵՆ

«Փաստորեն» վերլուծական ծրագիրը «ԱրմՆյուզ» հեռուստաընկերությունը եթեր է հեռարձակում ամեն կիրակի: Այն շաբաթվա կարևորագույն հասարակական-քաղաքական իրադարձությունների վերլուծական ամփոփումն է:

9:00
16:00

250 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

## ԱՅԲ ՖԵ+

Արմնյուզի նոր եթերաշրջանը կտարբերվի իր բազմազանությամբ ու տեղեկատվական բովանդակությամբ:
12 տարի անց, հին կադրերով, բայց նոր ֆորմատով Ա1+-ը վերադառնում է եթեր` Արմնյուզի եթեր: Սեպտեմբերի 10-ից, շաբաթը հինգ օր ժամը 21.00-ին, Այբ ֆե+-ը կլինի եթերում:
Արմնյուզը չի միջամտի, չի խմբագրի ու չի պլանավորի, միայն եթեր կտրամադրի:

21:00
9:00

700 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

## ԻՆՖՈԳՐԱՖԻԿԱ

«Ինֆոգրաֆիկա» հեռուստահաղորդումը 3-5 րոպե տևողությամբ տեղեկատվական հաղորդում է, որը մեկնաբանություններով ուղեկցվող ֆոտոշարքի միջոցով ներկայացնում է տվյալ օրվա ուշագրավ իրադարձությունները՝ ամբողջ աշխարհում տեղի ունեցող:

Լողացող

1 500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)



## ՎԱՎԵՐԱԳՐԱԿԱՆ ՖԻԼՄ

Յուրաքանչյուր շաբաթ՝ շաբաթ և կիրակի օրերին, «ԱրմՆյուզ»-ը ցուցադրում է հայկական և արտասահմանյան վավերագրական ֆիլմեր:

22:30
09:30, 15:00

500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)




## ՓՐԱՅՄ ԹԱՅՄ

Յուրաքանչյուր օր` ժամը 18:00, «Փրայմ թայմ»-ը ծանոթացնում է «Արմնյուզ» հեռուստաընկերության հեռուստադիտողներին այն բոլոր հաղորդումներին, որոնք կարելի է դիտել «Արմնյուզ»-ի երեկոյան եթերում:

18:00

500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

## ԵՂԱՆԱԿԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Եղանակի տեսությունը եթերում է հայտնվում լուրերի թողարկումներից առաջ և դրանցից անմիջապես հետո: Ներկայացվում է Հայաստանի և Լեռնային Ղարաբաղի, ինչպես նաև Եվրոպայի եղանակի տեսությունը: Ամեն ժամագլխի եթերից մատուցվում են թարմացված տվյալներ եղանակի մասին՝ ուղեկցված հաճելի երաժշտությամբ:

Լողացող

1 500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

## ՏԱՐԱԴՐԱՄ

«Տարադրամ» հաղորդումը «Արմնյուզի» եթերում հեռուստադիտողների ուշադրությանն է ներկայացնում տվյալ օրվա տարադրամի փոխարժեքն ըստ Հայաստանի Կենտրոնական բանկի:

Լողացող

1 500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

# ԲԱՐԻ ԼՈՒՐ

«Բարի լուր»-ն «ԱրմՆյուզ»-ի ամենաբարի էջերից է: Այն ներկայացնում է նախորդ օրը Հայաստանի Հանրապետության տարածքում ծնված երեխաների քանակը՝ աղջիկների և տղաների առանձին թիվը: Էջը մշտապես բարձր ռեյթինգ ունի, քանի որ միանշանակ դրական ընկալման է արժանանում բոլորի կողմից: Նշենք, որ հատկապես ուշագրավ են նորածին երեխաներին պատկերող կադրերը, որոնք ցուցադրվում են այս էջում:

Լողացող

1 500 000

ՀՀ դրամ
(ներառյալ ԱԱՀ)

